Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 15 ՕԳՈՍՏՈՍ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ԱՆԿՈՐՈՒՍՏ ՀԱՎԱՔԵՆՔ ՀԱՑԱՀԱՏԻԿԻ ԱՌԱՏ ԲԵՐՔԸ

Գ. ԱՋԱՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրի տեղակալ

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորությունը, մեխանիզատորները և գյուղատնտեսության մասնագետները մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակի պատվին ծավալված մրցության մեջ, ավելի կազմակերպված, ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում և որակական բարձր ցուցանիշներով կատարեցին հացահատիկային կուլտուրաների ընթացիկ տարվա գարնանացանը։

Մեծ տոնը արժանավայել կերպով դիմավորելու, հացահատիկի բարձր բերք աճեցնելու նպատակով աշնանացանի սուցման և գարնանացանի դաշտերի պարարտացման համար դաշտ փոխադրվեցին ավելի շատ հանքային ու տեղական պարարտանյութեր։





Հացահատիկային կուլտուրաների ցանքը գրեթե ամբողջովին կատարվեց սորտային, բարձր բերքատու, ախտահանված սերմերով։ Կազմակերպված և որակով կատարվեցին հասկավոր կուլտուրաների մշակության մյուս աշխատանքները։

Աշտարակի և Բասարգեչարի շրջանների շատ կոլտնտեսություններում հազարավոր հեկտարների վրա, աշնանացանի վաղ գարնանային սնուցումը հանքային պարարտանյութերով, կատարվեց ինքնաթիռների օգնությամբ։

Բասարգեչարի և Սևանի շրջանների մի շարք կոլտնտեսություններում, ռեսպուբլիկայում առաջին անգամ, արտադրական լայն փորձարկման կարգով ինքնաթիռներով կազմակերպվեց հացահատիկային կուլտուրաների քիմիական քաղհանը «2,4 դ» կոչված պրեպարատով, որը բացի հացահատիկից և մյուս հացազգի բույսերից ոչնչացնում է դաշտում եղած մյուս բոլոր մոլախոտերը։

Ռեսպուբլիկայի ցածրադիր և նախալեռնային շրջանների շատ կոլտնտեսություններում արդեն սկսված է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը, մոտ օրերս այն կսկսվի նաև մնացած շրջանների կոլտնտեսություններում։ Էջմիածնի, Արտաշա-



տի, Հոկտեմբերյանի, Վեդու և Շահումյանի շրջանների շատ կոլտնտեսություններում, որտեղ հասկավոր կուլտուրաների բերքահավաքն ավարտված է կամ մոտ է ավարտման, յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 23—27 և ավելի ցենտներ աշնանացան ցորենի բերք։

Այս տարի հասկավոր կուլտուրաների բերքահավաքի ավելի քան 60 տոկոսը պետք է կատարվի կոմբայններով։ Ռեսպուբլիկայի ՄՏ կայաններն ստացել են զգալի քանակությամբ բերքահավաքի նոր մեքենաներ։ Հացահատիկի հունձ կկատարեն մոտ 900 կոմբայն։ Այդ իսկ պատճառով հասկավոր կուլտուրաների բերքահավաքը սեղմ ժամկետներում ու անկորուստ կատարելը մեծապես կախված կլինի նրանից, թե ՄՏ կայանների ու կոլտնտեսությունների ղեկավարները ինչպիսի կազմակերպվածությամբ կօգտագործեն բերքահավաքի այդ հզոր տեխնիկան։

Բերքահավաքը սեղմ ժամկետում ավարտելու և կորուստները մինիմումի հասցնելու համար անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր կոմբայն կատարի ու գերակատարի բերքահավաքի օրվա առաջադրանքները, հունձը կատարի որակով, ապահովի կոմբայնի կայուն հանգույցի նորմալ աշխա-

տանքը, որպեսզի կալսված հասկերի մեջ հատիկներ չմնան, ինչպես նաև կալսման ժամանակ հատիկները չջարդվեն։

Կոմբայնների բարձր արտադրանքի ապահովումը մեծ չափերով կախված է նաև կոլտնտեսությունների, կոմբայնային ագրեգատների սպասարկումից, հատկապես նավթամթերքների ու ջրի անխափան մատակարարումից, դաշտերի ժամանակին ու որակով նախապատրաստումից, կալսված հացահատիկը ժամանակին փոխադրելուց և վերջապես կոմբայնային ագրեգատի անձնակազմի սնունդը և հանգիստը լավ կազմակերպելուց։

Պետք է հասնել նրան, որպեսզի կոմբայնների անբավարար սպասարկման և նրանց տեխնիկական անսարքության պատճառով դեռևս մեծ չափերի հասնող պարապուրդները լրիվ կերպով լիկվիդացվեն։

Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը կարճ ժամկետում ավարտելու, բերքի կորուստները մինիմումի հասցնելու գործում առաջնակարգ նշանակություն ունի բերքահավաքի նոր, առաջավոր մեթոդի— անջատ բերքահավաքի լայն արմատավորումը արտադրության մեջ։ Բերքահավաքի այդ պրոգրեսիվ մեթոդի էությունն այն է, որ չեն



սպասում հասկավոր կուլտուրաների լրիվ հասունացմանը և հնձում սկսում են հատիկների մոմային հասունացման շրջանում։ Հնձված հացահատիկը, հնձող մեքենայի վրա եղած հատուկ հարմարանքների միջոցով, լաստերով փռվում է դաշտում և 3—5 օրվա ընթացքում լրիվ հասունանում է։ Դրանից հետո, կատարվում է փռված հացահատիկի հավաքումն ու նրա կալսումը։

Անջատ բերքահավաքի դեպքում, նայած տեղի հողա-կլիմայական պայմաններին, հասկավոր կուլտուրաների հունձը հնարավոր է լինում կոմբայնային բերքահավաքից 6—10 օրով ավելի շուտ սկսել։ Դրա շնորհիվ մեծ չափերով պակասում է բերքի կորուստը։ Բացի այդ լաստերի մեջ տեղի է ունենում հացահատիկի նորմալ, հավասար հասունացում։ Այնտեղ եղած մոլախոտերը, ինչպես նաև հացահատիկի ցողունները չորանում են, որի շնորհիվ կալսման ժամանակ ապահովվում է կոմբայնների անխափան, բարձր արտադրողական աշխատանքը։ Անջատ բերքահավաքի առավելություններից մեկն էլ այն է, որ այս դեպքում ստացվում է նորմալ խոնավությամբ, բարձր նատուրայի, մաքուր հացահատիկ, որը առանց կալերում նորից մաքրելու, չորացնելու ու զտե-

յու, ինչպես նաև մեծ քանակությամբ լրացուցիչ աշխօրեր ծախսելու, հնարավոր է հանձնել պետությանը կամ պահեստավորել։

Հաշվի առնելով անջատ բերքահավաքի վերը նշված և մյուս շատ առավելությունները՝ բերքահավաքի տեմպերը արագացնելու, կորուստների դեմ պայքարելու, բարձրորակ հացահատիկ ստանալու և ստացված հացահատիկի ինքնարժեքը իջեցնելու գործում, սկսած 1956 թվականից այն լայն կերպով կիրառվում է Սովետական Միության շատ ռեսպուբլիկաներում ու մարզերում։ Ավելի լայն չափերով անջատ բերքահավաքի մեթոդը կիրառվում է ընթացիկ տարում։ Բավական է նշել, որ Կրասնոդարի երկրամասի կոլտնտեսություններում հասկավոր կուլտուրաների բերքահավաքի ավելի քան 85 տոկոսը կատարվեց անջատ եղանակով, որը հնարավորություն տվեց կարճ ժամկետում ավարտելու բերքահավաքը, առանձնացնելու սերմացուների ֆոնդերը, Միության մեջ առաջինը կատարելու հացամթերումների պետական պլանը և կորստից փրկելու ավելի քան 10 միլիոն փութ հացահատիկ։

Մեր ռեսպուբլիկայի ՄՏ կայանները 1956 թվականին ստացան 35 կոմպլեկտ անջատ բերքահավաքի մեքենաներ և այլ հարմա-



րանքներ։ Սակայն այդ մեքենաները դեռևս լրիվ կարողությամբ չեն օգտագործվում։ Օրինակ, Վեդու և Արարատի ՄՏ կայանները իրենց սպասարկած կոլտնտեսություններում չկարողացան իրականացնել անջատ բերքահավաքը։ Մինչդեռ այդ նույն ՄՏ կայանների կողմից սպասարկվող կոլտնտեսություններում հացահատիկային դաշտերի մասսայական գերհասունացման պատճառով տեղի է ունենում բերքի կորուստ։

Այս տարի ռեսպուբլիկայի հացահատիկային կուլտուրաների 40 տոկոսը հնձվելու է ձեռքով։ Բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու համար անհրաժեշտ է բերքահավաքի աշխատանքներին մասնակից դարձնել բոլոր կոլտնտեսականներին, ստեղծել պայմաններ, որպեսզի նրանցից յուրաքանչյուրը կատարի ու գերակատարի հնձի օրվա առաջադրանքները և որ կարևորն է ապահովվի հնձի բարձր որակը։

Կորուստների դեմ պայքարի գործում չափազանց կարևոր նշանակություն ունի հնձված հացահատիկի արագ փոխադրումը և նրա ժամանակին կալսումը։

Բերքահավաքի առաջին օրերը ցույց են տալիս, որ դեռևս անբավարար կերպով է պայքար մղվում կորուստների դեմ։ Հնձված

*դաշտերում դեռևս թափված մեծ քանակությամբ հասկեր է մնում։ Հատիկի զգալի կորուստներ են լինում կալսիչների, կոմբայնների անկանոն աշխատանքի, ձեռքով հնձըված հացահատիկը սայլերով դաշտից կալ փոխադրելու և բերքահավաքի շատ այլ աշխատանքների ընթացքում։ Անհրաժեշտ է, որպեսզի բոլոր կոլտնտեսություններում, բրիգադաներում, կոմբայնային ագրեգատներում, կալերում գյուղական դպրոցների ուսուցիչների ղեկավարությամբ պիոներներից ու դպրոցականներից կազմակերպել հասկ հավաքող առանձին օղակներ, և այդ օղակների միջոցով հավաքել մինչև վերջին հասկը։*

*Բերքահավաքի աշխատանքներին զուգընթաց պետք է նախապատրաստվել աշնանացանը ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում ավարտելու համար։*

---

## ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԾՆՈՒՆԴՆ Է

Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան լայն ասպարեզ բացեց մեր անծայրածիր երկրի բոլոր ազգությունների քաղաքական և տնտեսական զարգացման համար։*

*Թևակոխելով սոցիալիստական շինարարության ուղին, հայ ժողովուրդը Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում աչքի ընկնող հաջողությունների հասավ տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։*

*Անցած 37 տարում ռեսպուբլիկայում ստեղծվել է հզոր ինդուստրիա։ Կառուցվել և գործարկվել են հարյուրավոր խոշոր ձեռնարկություններ։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ներկայումս երկրին տալիս է մոլիբդեն և ալյումին, հաստոցներ և կոմպրեսորներ, գեներատորներ ու տրանսֆորմատորներ, շինանյութ և ժողովրդական*

սպառման հարյուրավոր տեսակների ապրանքներ։ Հայաստանի ֆաբրիկաների ու գործարանների արտադրանքը կարելի է տեսնել ոչ միայն մեր անծայրածիր Հայրենիքի զանազան անկյուններում, այլև նրա սահմաններից շատ հեռու։

Ռեսպուբլիկայում բարձր զարգացման հասավ սովետական իշխանության տարիներին ստեղծված քիմիական արդյունաբերությունը։ Եթե 1927 թվականին Հայաստանի քիմիական արդյունաբերության մեջ աշխատում էին ընդամենը 59 բանվոր և համախառն արտադրանքը կազմում էր մոտավորապես 300 հազար ռուբլի, ապա 1938 թվականին քիմիական արդյունաբերության մեջ զբաղված էր 1368 բանվոր և այդ ձեռնարկությունների համախառն արտադրանքը կազմում էր 45 միլիոն 200 հազար ռուբլի։ Ներկայումս Հայաստանի քիմիական արդյունաբերությունը, իր տեսակարար կշռով ծանր արդյունաբերության բնագավառում գրավում է առաջին տեղերից մեկը։ Քիմիական արդյունաբերության առավել խոշոր ձեռնարկություններն են Երևանի Կիրովի անվան, Պոլիվինիլացետատ, Ավտոդողերի, Ալավերդու քիմիական գործարանները, Կիրովականի քիմիական կոմբինատը և այլն։



Մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության արտադրանքը օգտագործվում է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Դժվար է գտնել արտադրության այնպիսի ճյուղ, որը կարողանար կառավարվել առանց քիմիայի։

Քիմիական արդյունաբերության կարևորագույն ճյուղը հանդիսանում է սուպերֆոսֆատի, ազոտային և այլ պարարտանյութերի, ինչպես նաև գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարելու համար գործածվող նյութերի արտադրությունը։

Ռեսպուբլիկայի քիմիական գործարանների կոլեկտիվները 1957 թվականին պետք է արտադրեն ավելի քան 170 հազար տոննա հանքային պարարտանյութ և 14 հազար տոննա թունավոր նյութեր։ Այդ քանակը պատկերացնելու համար նշենք, որ ամբողջ ցարական Ռուսաստանը 1913 թվականին արտադրեց ընդամենը 63 հազար տոննա սուպերֆոսֆատ։

Ռեսպուբլիկայում հանքային պարարտանյութերի արտադրության ասպարեզում հատուկ տեղ է գրավում Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատը, որի արտադրանքը հանրածանոթ է Հայաս-

տանի, Վրաստանի, Ուզբեկստանի, Թուրքմենիայի և Ադրբեջանի կոլտնտեսականներին։ Այս ձեռնարկությունը Հայաստանի քիմիական արդյունաբերության առաջնեկն է։ Այս տարի հուլիսին լրացավ նրա շահագործման 25 տարին։ Անցած տարիների ընթացքում կոմբինատի համախառն արտադրանքի թողարկումն ավելացել է 10 անգամ, կառուցվել ու գործարկվել են նոր ցեխեր, որոնք հագեցվել են հայրենական առաջնակարգ տեխնիկայով։ 1960 թվականին 1955 թվականի հետ համեմատած կոմբինատի արտադրանքը ավելանալու է 4—5 անգամ։ Եվ դա միանգամայն հասկանալի է, եթե հաշվի առնենք, որ մեկ հեկտար հացահատիկի միջին բերքատվությունը կազմում է 12—13 ցենտներ, իսկ ազոտային պարարտանյութերի գործածության դեպքում այն հասնում է 28—32 ցենտների, երկու-երեք անգամ ավելանում է նաև բամբակի բերքը։ Միայն կոմբինատի արտադրած ազոտային միլիոնավորով հողը պարարտացնելիս սարեկան երկիրը լրացուցիչ ստանում է 20 միլիոն փութ հացահատիկ, երկու միլիոն տոննա շաքարի ճակնդեղ և 200 հազար տոննա բամբակ։

Արտադրության հետ միասին աճում են



նաև կոմբինատի մարդիկ։ Ներկայումս առանց արտադրությունից կտրվելու բարձրագույն ուսումնական հաստատություններում և տեխնիկումներում սովորում են 60 մարդ, մոտավորապես 350 մարդ հաճախում են բանվոր-երիտասարդության դպրոցները։

Շնորհավորելով կիրովականցիների արտադրական հաջողությունները, գործարանի 25-ամյակի կապակցությամբ, ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը վստահություն հայտնեցին, որ կոմբինատի բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները և ծառայողները այսուհետև ևս անդուլ կերպով կաշխատեն հօգուտ քիմիական արդյունաբերության հետագա զարգացման։ Այդ վստահությունը արդարացնելու համար կոմբինատի կոլեկտիվը բոլոր ջանքերը գործադրում է իր արժանի ավանդը մուցնելու երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու, իսկ թեթև արդյունաբերությանը՝ հումքով ապահովելու մեծ ու պատվավոր գործում։

Լուրջ հաջողություններ է ձեռք բերել Երևանի Ավտոդողերի գործարանը։ Գործարանը երիտասարդ ձեռնարկություն է, որը հիմնվել է Հայրենական պատերազմի տարիներին։ Առաջին ավտոդողը գործարանը

տվել է 1943 թվականի նոյեմբերի 6-ին՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 26-րդ տարեդարձի նախօրյակին։ Անցած 13 տարում գործարանում աճել են մասնագետների ու բանվորների հիանալի կադրեր։

1947 թվականի համեմատությամբ գործարանի արտադրանքն աճել է ավելի քան 13 անգամ։

Հինգերորդ հնգամյակում նրա արտադրանքի թողարկումն ավելացավ ավելի քան երկու անգամ, 56 տոկոսով բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։

Վերջերս Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահությունը նշելով գործարանի արտադրական հաջողությունները, նրան պարգևատրեց Պատվոգրով։

Պարգևատրվեցին նաև 28 բանվոր և ինժեներա-տեխնիկական աշխատողներ։

Պարտիայի XX համագումարի դիրեկտիվներում խնդիր է դրվում, ավտոդողերի գործարաններում ի հաշիվ ներքին ռեզերվների օգտագործման, արտադրանքի թողարկումը մինչև 1960 թվականը ավելացնել 24 տոկոսով։ Երևանի դողագործները պարտիայի և կառավարության այդ առաջադրանքը կատարեցին արդեն 1956 թվականին, ավ-



տոդողերի արտադրությունն ավելացնելով 50 տոկոսով։

Այս տարի նրանք ժողովրդական տնտեսությանը կտան 110 հազարով ավելի ավտոդող, քան անցած տնտեսական տարում։

Երիտասարդ ձեռնարկություն է նաև Երևանի Պոլիվինիլացետատ գործարանը, որի համախառն արտադրանքը 1956 թվականին, 1954 թվականի համեմատությամբ ավելացավ 114 տոկոսով։ Այնինչ նա 1954 և 1955 թվականներին աշխատում էր վնասով։

Կենսագործելով սինդահումքը սինթետիկ հումքով փոխարինելու մասին Պարտիայի Կենտկոմի 1955 թվականի Հուլիսյան պլենումի որոշումը, ինչպես նաև մոբիլիզացնելով բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական ուժերը, շուտով գործարանը անցավ ռեսպուբլիկայի շահութաբեր ձեռնարկությունների շարքը։

Անցյալ տարի նա տվեց 2 միլիոն 787 հազար ռուբլու շահույթ և միևնույն ժամանակ ժողովրդական տնտեսության համար տնտեսեց մի քանի միլիոն փութ սննդամթերք։

Արտադրական պլանները սիստեմատիկաբար կատարելու գործում զգալի աշխա-

տանք են կատարել նորարարները։ Վերջին երկու տարվա ընթացքում արտադրության մեջ արմատավորվել է 470 նորարարական առաջարկ, որոնք երկրին տարեկան տալիս են 14 միլիոն ռուբլու խնայողություն։ Վեցերորդ հնգամյակի առաջին տարվա պլանը գործարանի կոլեկտիվը կատարեց ժամկետից շուտ՝ 104,2 տոկոսով, իսկ այս տարվա համախառն արտադրանքի և ասորտիմենտի բոլոր տեսակների թողարկման պլանը պարտավորվել է կատարել մինչև դեկտեմբերի 20-ը։ Արտադրանքի ինքնարժեքի իջեցման հաշվին տրվելու է մեկ միլիոն ռուբլու արտապլանային կուտակում և տնտեսված հումքի հաշվին թողարկվելու է 500 հազար ռուբլու արտադրանք։ Գործարանի կոլեկտիվը ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի սոցիալիստական մրցության է հրավիրել Մոսկվայի մարզի Կուսկովայի քիմիական կոմբինատի աշխատողներին։

Ռեսպուբլիկայում սինթետիկ կաուչուկի արդյունաբերությունը հիմնված է քիմիական սինթեզի նվաճումների վրա։ Ներկայումս Սովետական Միությունում կաուչուկի արտադրության համար իբրև հումք օգտագործում են հացահատիկը, կարտոֆիլը և այլ



կուլտուրաներ։ Եթե նկատի ունենանք, որ մեր կաուչուկը արտադրվում է ոչ սննդամթերային հումքից, ապա պարզ կդառնա այդ արտադրության հետագա զարգացման անհրաժեշտությունն ու շահավետությունը։

Պարտիայի XX համագումարի պատմական որոշումը մարտական ծրագիր դարձավ Կիրովի անվան գործարանի կոլեկտիվի համար։ Ապահովելով ցեխերի ռիթմիկ ու անխափան աշխատանքը, կիրովցիները ավելացրին արտադրանքի թողարկումը և իջեցրին գործարանային ծախսերը։ 1955 թվականի համեմատությամբ կաուչուկի արտադրությունը, նույն կարողության պայմաններում, ավելացավ 7,4 տոկոսով, 1956 թվականին տվեց մեկ միլիոն 445 հազար ռուբլու արտապլանային կուտակում։

Կոլեկտիվի անձնվեր աշխատանքը գնահատվեց ըստ արժանավույն։ Համամիութենական Սոցիալիստական մրցության ընթացքում կիրովցիները երեք անգամ նվաճեցին քիմիական արդյունաբերության մինիստրության և պրոֆմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշը։

Ի պատիվ մեծ տոնի, գործարանի կոլեկտիվը պարտավորվել է 1957 թվականի պլանը իր բոլոր տեխնիկա-տնտեսական ցուցա-

նիշներով կատարել ժամկետից շուտ։ Գերակատարված է նաև այս տարվա կիսամյա պլանը, որի համար գործարանին շնորհվել է Համամիութենական սոցիալիստական մրցության մրցանակ։

Քիմիական արդյունաբերությունը, որը մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայում զգալի դեր է խաղում, թողարկվող արտադրանքի ծավալը վեցերորդ հնգամյակում կավելացնի մոտավորապես երկու անգամ։ Զգալիորեն կաճի ավտոդողերի, ռետինա-տեխնիկական իրերի, ծծմբաթթվի, պղնձարջասպի, պարարտանյութերի, զանազան քիմիական նյութերի արտադրությունը։ Դրա հետ միասին կկազմակերպվեն նոր ճյուղեր՝ Կիրովականում ացետիլ ցելյուլոզի և ացետատային մետաքսի, կոլանդի, միլամինի, Երևանում՝ ռետինա-տեխնիկական և այլ իրերի արտադրությունը։

Քիմիական արդյունաբերության զարգացման համար մեծ նշանակություն կունենան Երևանում նոր հայտնագործված աղահանքերը, որոնք ունեն մոտավորապես կես միլիարդ տոննա աղի պաշար։

---

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԻ ՊԱՏՎԻՆ

(Ագիտատորի զրույցը սոցմրցության ստանձնած պարտավորությունների կատարման մասին)

Խ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Երևանի պահածոների գործարանի մրգի ցեխի ագիտատոր, ինժեներ Խ. Աղաջանյանը ագիտացիոն աշխատանքի ուսանելի փորձ ունի։ Նա սիստեմատիկաբար զրույցներ է ունենում բանվորների հետ նրանց հուզող հարցերի շուրջ, ծանոթացնում է նրանց մեր երկրում տեղի ունեցող կարևորագույն իրադարձությունների հետ։ Պարբերաբար նա իր զրույցները նվիրում է գործարանի, ցեխի, հերթափոխի առջև կանգնած խնդիրներին, պատմում ունկնդիրներին արտադրության առաջավորների ձեռք բերած հաջողությունների և նրանց աշխատանքի փորձի մասին։ Բանվորներն ու բանվորուհիները սիրով են

յսում իրենց ագիտատորի զրույցներն ու ընթերցանությունները։

Օրերս նա իր հերթական զրույցը նվիրեց այն բանին, թե ինչպես են գործարանի կոլեկտիվը և մրգի ցեխի աշխատողները կատարում Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին մրցությամբ ստանձնած պարտավորությունները։

— Մեր երկրի աշխատավորները,— ասաց նա,— արտադրական նորանոր հաջողություններով են նշանավորում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի փառապանծ 40-ամյակը։ Երկրում ծավալված համաժողովրդական մրցությանը մասնակցում է նաև մեր գործարանի կոլեկտիվը ու մեր ցեխի աշխատողները, շարունակում է նա։

Ագիտատորը համառոտակի պատմում է նոր հնգամյակի 2-րդ տարում և հատկապես այս տարվա 2-րդ կիսամյակում գործարանի կոլեկտիվի առջև դրված խնդիրների մասին։ Ընթացիկ տարում,— ասում է ագիտատորը,— գործարանը բնակչությանը տալու է 35 միլիոն 600 հազար տուփ մրգի և բանջարեղենի զանազան տեսակի պահածո։ Դա 4 միլիոն 200 հազար տուփով ավելի է անցյալ



տարվա համեմատությամբ։ Գործարանի կոլեկտիվը պարտավորություն է ստանձնել 1957 թվականի պլանը տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով կատարել ժամկետից 25 օր շուտ, դեկտեմբերի 5-ին և պլանից դուրս թողարկել մեկ միլիոն տուփ պահածո։ Կոլեկտիվը կոչ արեց ռեսպուբլիկայի պահածոների արդյունաբերության բոլոր աշխատողներին ավելի լայնորեն ծավալել մրցությունը ի պատիվ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի և ավելի շատ պահածոներ տալ բնակչությանը։

Կատարելով մրցությամբ ստանձնած պարտավորությունները,— շարունակում է նա,— ընթացիկ տարում գործարանի ցեխերում տեղադրվեցին նորագույն և բարձր արտադրողականությամբ աշխատող շատ սարքավորումներ, ինչպես նաև ավտոմատ հարահոս ագրեգատներ։ Մեքենայացման ենթարկվեցին աշխատատար մի շարք պրոցեսներ, որի շնորհիվ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը և հեշտացվեց բանվորների աշխատանքը։ Այնուհետև ագիտատորը կոնկրետ օրինակներ է բերում այն մասին, թե ինչպես ընթացիկ տարվա առաջին կիսամյակում գործարանի յուրաքանչյուր բան-

վոր ու բանվորուհի, ինժեներա-տեխնիկական աշխատող ջանք չեն խնայել մեր երկրում պարենային ապրանքների առատություն ստեղծելու համար։

Գործարանը առաջին կիսամյակի համախառն արտադրանքի պլանը կատարեց 112 տոկոսով, իսկ պահածոների թողարկման պլանը՝ 110 տոկոսով։ Այդ նույն ժամանակաշրջանում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 33 տոկոսով, զգալի չափով բարելավվել թողարկվող արտադրանքի որակը։

Ավարտելով իր զրույցի այն մասը, որը նվիրված էր ամբողջ գործարանի կոլեկտիվի կողմից ստանձնած պարտավորությունների կատարմանը, ագիտատորը հանգամանորեն խոսում է այն մասին, թե իրենց ցեխը ինչպես է կատարել մրցությամբ ստանձնած իր պարտավորությունը։— Այս տարի, մեր ցեխը,— ասում է նա,— բնակչությանը տալու է 7 միլիոն տուփ մրգի մուրաբաներ, կոմպոտներ, ջեմ և այլ տեսակի պահածոներ։ Մրցելով բանջարեղենի ցեխի կոլեկտիվի հետ, մենք պարտավորվեցինք տարվա պլանը կատարել մինչև Հայաստանի Սովետա-



կան կարգերի հաստատման 37-րդ տարեդարձը, նոյեմբերի 29-ին։

Պայքարելով մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման համար, ցեխի աշխատողները նոր տարվա առաջին իսկ օրից աշխատեցին բարձր արտադրողականությամբ, հերթափոխություններում, բրիգադաներում, աշխատանքի բոլոր օղակներում ծավալվեց գործարար մրցություն։ Դրա շնորհիվ ցեխի աշխատողները հաջողությամբ ավարտեցին վարդի և ընկույզի մուրաբաների արտադրությունը և բարձր կազմակերպվածությամբ սկսեցին ծիրանի մշակումը։

Լավ աշխատանքի արդյունքը եղավ այն, որ մեր ցեխը առաջին կիսամյակի պլանը կատարեց ժամկետից 10 օր շուտ և մինչև կիսամյակի վերջը 2-րդ կիսամյակի հաշվին արտադրեց 500 տուփ պահածո։ Ինչպես ձեզ հայտնի է,— շարունակում է ագիտատորը,— սոցիալիստական մրցության մեջ մեր ցեխի կոլեկտիվը ճանաչվեց հաղթող և նրան շնորհվեց գործարանի փոխանցիկ դրոշը։

Այնուհետև ագիտատորը մանրամասնորեն պարզաբանում է առաջավորների աշխատանքի փորձը։ Ինչպես, օրինակ, «Սոցիա-

*լիստական մրցության գերազանցիկի կրծքանշանով» պարգևատրված Կատյա Ասլանյանի, Մարուսյա Էլեքսաշվիլու, Եսթեր Մակարյանի, Ռոզա Ջաքարյանի, Գևորգ Հակոբյանի և շատ ուրիշ առաջավորների աշխատանքի փորձի և նրանց արտադրական հաջողությունների մասին։*

*Զրույցի վերջում ագիտատորը ունկնդիրների ակտիվ օգնությամբ բացահայտում է մի շարք թերություններ, որ գոյություն ունեն ցեխում և այդ թերությունները վերացնելու համար նշում գործնական միջոցառումներ։*

*Մեր նախնական հաջողությունները,— ասում է ագիտատորը, մեզ իրավունք չեն տալիս հանգստանալու։ Մեր առաջնահերթ խնդիրն է՝ ավելի լայնորեն ծավալել մրցությունը, պատվով կատարել մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ստանձնած բոլոր պարտավորությունները։*

---



# ԱՃՈՒՄ ԵՎ ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

(Թվեր և փաստեր)

*Անշեղորեն կենսագործելով Պարտիայի XX համագումարի որոշումները, մեր երկրի աշխատավորները նշանակալից հաջողություններ են ձեռք բերել արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման գործում։ Ահա այդ են հաստատում այս տարվա առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքները։*

★ *ՍՍՌՄ-ում արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման 1957 թվականի առաջին կիսամյակի պլանը կատարված է 104 տոկոսով։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի արտադրությունը աճել է 10 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 11 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրությունը՝ 8 տոկոսով։*

★ *Արդյունաբերական արտադրանքի առաջին կիսամյակի պլանը գերակատարված է բոլոր միութենական ռեսպուբլիկաներում։ Ռուսաստանի ֆեդե-*

ռատիվ ռեսպուբլիկայում կիսամյակի պլանը կատարվել է 104 տոկոսով, Ուկրաինական ՍՍՌ-ում՝ 104 տոկոսով, Բելոռուսական ՍՍՌ-ում՝ 104 տոկոսով, Ուզբեկական ՍՍՌ-ում՝ 103 տոկոսով, Հայկական ՍՍՌ-ում՝ 103 տոկոսով և այլն։

★ Կիսամյակի ընթացքում բարելավվել են տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, արդյունաբերության մեջ 6 տոկոսով և շինարարության մեջ 9 տոկոսով աճել է աշխատանքի արտադրողականությունը, իսկ արտադրանքի ինքնարժեքն իջել է 1,8 տոկոսով։

★ Մեծ չափերով ավելացել է արդյունաբերության առանձին ճյուղերի համախառն արտադրանքը։ Օրինակ, 1957 թվականի առաջին կիսամյակում, 1956 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, սև մետալուրգիայի համախառն արտադրանքն աճել է 106 տոկոսով, նավթի արտահանումը՝ 116 տոկոսով, մեքենաշինության և մետաղամշակման գծով՝ 113 տոկոսով, մսեղենի, յուղի, պանրի և կաթնամթերքների արդյունաբերության գծով՝ 124 տոկոսով և այլն։

★ Վիթխարի հաջողություններ են ձեռք բերված ծանր արդյունաբերության ասպարեզում։ Միայն առաջին կիսամյակում արտադրված է 18 միլիոն 200 հազար տոննա չուգուն, 25 միլիոն տոննա պողպատ, 19 միլիոն 800 հազար տոննա գլանվածք, 23 միլիոն 700 հազար տոննա կոքս, 226 միլիոն տոննա



ածուխ, 102 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

★ Նույն ժամանակաշրջանում սոցիալիստական արդյունաբերությունը երկրին տվել է 244 հազար ավտոմոբիլ, 101 հազար տրակտոր (ֆիզիկական միավորներ), 57 հազար հացահատիկային կոմբայն, 133 մագիստրալային էլեկտրաքարշ, 150 մագիստրալային ջերմաքարշ, 216 տրոլեյբուս, 949 ավտոգրեյդեր և այլն։

★ Կիսամյակում մեծ աշխատանք է կատարված շինանյութերի արտադրությունն ավելացնելու գործում։ Այդ ժամանակամիջոցում արտադրվել է 113 միլիոն խորանարդ մետր շինափայտ, 13 միլիոն 700 հազար տոննա ցեմենտ, 58 միլիոն քառակուսի մետր պատուհանի ապակի, 10 միլիարդ աղյուս, 5 միլիոն 900 հազար խորանարդ մետր երկաթբետոնե հավաքովի կոնստրուկցիաներ ու դետալներ և այլն։

★ Այս տարվա առաջին կիսամյակում արտադրվել է 2 միլիարդ 800 միլիոն մետր բամբակե գործվածքներ, 137 միլիոն մետր բրդե գործվածքներ, 211 միլիոն մետր վուշե գործվածքներ, 388 միլիոն մետր մետաքսե գործվածքներ, 155 միլիոն զույգ կաշվե կոշիկ, 11 միլիոն 700 հազար ժամացույցներ, 2 միլիոն 100 հազար ռադիոընդունիչներ և հեռուստատեսներ, 147 հազար կենցաղային սառնարաններ, 166 հազար լվացքի մեքենաներ, 1 միլիոն 100 հազար կարի մեքենաներ և այլն։

★ Այս տարվա հունվարից մինչև հունիս ամսվա վերջը արդյունաբերական մշակման է ենթարկվել 800 հազար տոննա միս, արտադրվել է 400 հազար տոննա երշիկեղեն, 1 միլիոն 300 հազար տոննա ձուկ, 9 միլիոն 500 հազար տոննա յուղ, պանիր և այլ կաթնամթերքներ՝ կաթի վերածած, 794 հազար տոննա հրուշակեղեն, 684 հազար տոննա օճառ և այլն։

★ Կես տարվա ընթացքում մոտ 800 հազար գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ արել են ավելի քան մեկ միլիոն արժեքավոր առաջարկ, մոտ 700 հազար առաջարկ արմատավորվել է արտադրության մեջ։

★ Շեշտակի վերելք է ապրում սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը ավելացել է 1,5 միլիոն հեկտարով, իսկ 1953 թվականի համեմատությամբ՝ 23 միլիոն հեկտարով։ Ցորենի ցանքատարածությունը անցյալ տարվա համեմատությամբ ավելացել է 7,5 միլիոն հեկտարով, իսկ 1953 թվականի համեմատությամբ՝ 21 միլիոն հեկտարով։

★ Խոշոր աշխատանք է կատարված անասնաբուծության զարգացման բնագավառում։ 1956 թվականի հուլիսի 1-ի համեմատությամբ 1957 թվականի աա 1-ը հուլիսի կոլտնտեսություններում ու սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 3 միլիոն, խոզերինը՝ 5 միլիոն 300



հազար, ոչխարներինը ու այծերինը՝ 4 միլիոն 900 հազար գլխով։ Աճել է նաև կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների սեփական անասունների գլխաքանակը։

★ Մեծ չափերով ավելացել է նաև մսի արտադրությունը։ Այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կոլտնտեսություններում և սովխոզներում մսի արտադրությունն ավելացել է 30 տոկոսով։

★ Խոշոր հաջողություններ են ձեռք բերված կաթի արտադրության գործում։ Այս կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կոլտնտեսություններում և սովխոզներում կաթի արտադրությունն ավելացել է 26 տոկոսով, իսկ 1953 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ՝ երկու և կես անգամ։ Կոլտնտեսություններում և սովխոզներում մեկ կովի միջին կաթնատվությունը անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ՝ բարձրացել է 18 տոկոսով, իսկ 1953 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ՝ գրեթե կրկնակի չափով։

★ Այժմ մեր կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն 39 միլիոն 300 հազար խոշոր եղջերավոր անասուններ, այդ թվում, 13 միլիոն կով և 31 միլիոն խոզ։ Ոչխարների և այծերի թիվը հասնում է 111 միլիոնի։

★ Այս տարվա առաջին կիսամյակում կազմա-

կերպվել է 674 նոր սովխոզ, հողօգտագործմամբ ընդարձակվել են շատ սովխոզներ։ Այժմ երկրում կա 5.773 սովխոզ։

★ Առաջին կիսամյակում երկրի գյուղատնտեսությունը ստացել է 101 հազար տրակտոր (ֆիզիկական միավորներ), 184 հազար բեռնատար ավտոմոբիլ, 57 հազար հացահատիկային կոմբայն, հացահատիկային կոմբայնների 117 հազար խրձահավաք, 74 հազար լաֆետ, 19 հազար եգիպտացորենահավաք կոմբայն, 25 հազար սիլոսահավաք կոմբայն, 4.300 շաքարի ճակնդեղահավաք կոմբայն, 61 հազար տրակտորային գութան, 141 հազար տրակտորային շարքացան և այլն։

★ Նշանակալից հաջողություններ են ձեռք բերված ժողովրդի նյութական բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ։ 1957 թվականի հունվարի 1-ից բարձրացված է ցածր վարձատրվող բանվորների, ծառայողների աշխատավարձը։ 1956 թվականի հոկտեմբերի 1-ից ավելացված են կենսաթոշակները։ Ներկայումս պետական կենսաթոշակներ են ստանում ավելի քան 17 միլիոն մարդ։

★ Բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձը անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ ավելացել է 5 տոկոսով, իսկ կենսաթոշակներն ու նպաստները մեկ ու կես անգամ։ Բնակչությունը կես տարում նպաստների, զանազան



արտոնությունների ձևով պետությունից ստացել է 97 միլիարդ 500 հազար ռուբլի։

★ Առաջին կիսամյակում ավելի քան 6 միլիարդ ռուբլով ավելացան կոլտնտեսականներին տրվող դրամական վճարումները։ 40 միլիարդ ռուբլով աճեց պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը։ Առանձնապես աճել է կարևորագույն ապրանքների վաճառքը, այն է՝ մսի և մսեղենի վաճառքը 17 տոկոսով, կաթինն ու կաթնամթերքներինը՝ 34 տոկոսով, ձվինը՝ 24 տոկոսով, շաքարինը՝ 9 տոկոսով, թեյինը՝ 19 տոկոսով, ձկնամթերքներինը՝ 7 տոկոսով և այլն։

★ Ավելացել է նաև ոչ-պարենային ապրանքների վաճառքը, բրդե գործվածքներինը՝ 37 տոկոսով, մետաքսագործվածքներինը՝ 24 տոկոսով, վուշե գործվածքներինը՝ 9 տոկոսով, տրիկոտաժեղենինը՝ 32 տոկոսով, տնային սառնարաններինը՝ 45 տոկոսով և այլն։

★ Մեծ աշխատանք է կատարվել աշխատավորներին բնակարաններով ապահովելու ուղղությամբ։ Պետական միջոցների հաշվին կառուցվել և հանձնվել է ավելի 9 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, 36 %-ով ավելի քան անցյալ տարվա առաջին կիսամյակում։

★ Ահա մեր երկրի աշխատավորները այսպիսի հաջողություններով են դիմավորում Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձը։

# ՌՈՒՄԻՆԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ

(Թվեր և փաստեր)

Օգոստոսի 23-ին լրանում է Ռումինիայում ժողո-
վրդա-Դեմոկրատական կարգերի ճաստատման 13-րդ
տարեդարձը: *Ազատագրվելով ֆաշիստական ծանր լը-
ծից և երկրում գոյություն ունեցող բուրժուա-կալվա-
ծատիրական ռեժիմից, ռումինական ժողովուրդը իր
հարազատ Բանվորական պարտիայի ղեկավարությամբ
ու Սովետական Միության եղբայրական օգնությամբ
հսկայական հաջողություններ է ձեռք բերել արդյու-
նաբերության, գյուղատնտեսության և սոցիալիստա-
կան շինարարության մյուս բնագավառներում: Այդ
մասին են վկայում հետևյալ թվերն ու փաստերը:*

☆ *Ռումինիայում միայն վերջին չորս տարվա ըն-
թացքում կառուցվել են ավելի քան 100 գործարան և
ֆաբրիկա: Առաջին հնգամյակի տարիներին կառուցվել
են արդյունաբերական այնպիսի խոշոր օբյեկտներ,
ինչպիսիք են՝ նոր դոմնյան վառարաններ՝ Խունեդո-
արում, նավթամշակման սարքավորումներ արտադրող
գործարաններ՝ Բորզեշտում և Տեկյամենում, հիդրո և*



*ջերմաէլեկտրակայաններ՝ Պարոշենում, Մորենում,
Բորզեշտում և ուրիշ տեղերում, գնդակավոր առանց-
քակալների գործարան՝ Բիրլադում և այլն:*

☆ *Մետաղի արտադրությամբ երկրորդ համաշ-
խարհային պատերազմից առաջ Ռումինիան Եվրոպա-
յում բռնում էր ամենահետին տեղերից մեկը, իսկ մե-
քենաշինության արդյունաբերության արտադրանքով
հազիվ կարողանում էր բավարարել երկրի պահանջի
միայն 5 տոկոսը: Արևմտյան տրեստներին ու բանկե-
րին էր պատկանում երկրի նավթարդյունաբերության
92 տոկոսը, գազի և էլեկտրական արդյունաբերության
95 տոկոսը, մետաղի արդյունաբերության 74 տոկո-
սը, քիմիական արդյունաբերության 72 տոկոսը:*

☆ *Ռումինիայի Բանվորական պարտիայի կողմից
կիրառվող սոցիալիստական ինդուստրացման քաղա-
քականությունը հոյակապ արդյունքներ է տվել: Արդեն
1956 թվականի վերջերին արդյունաբերական արտա-
դրանքը 3 անգամ ավելի էր քան 1938 թվականին:
Ներկայումս Ռումինիան 3 ամսվա ընթացքում այնքան
էլեկտրաէներգիա և պողպատ է արտադրում, որքան
արտադրվել է ամբողջ 1938 թվականին: Նույն ժամա-
նակաշրջանի համեմատությամբ ածխի հանույթը ա-
վելացել է 2,3 անգամ, չուգունի արտադրությունը՝
4,3 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 4,2
անգամ: Ներկայումս Ռումինիան արդյունահանում է
11 միլիոն տոննա նավթ, առաջներում 4 միլիոն տոն-
նայի դիմաց:*

☆ 1955 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, երկրում պողպատի արտադրությունը ավելացել է 4 անգամ, որը հնարավորություն է տալիս ոչ միայն բավարարել երկրի պահանջները, այլև որոշ մասը արտահանել։ Բացի վերոհիշյալից, բնակչության կարիքները բավարարելու համար գործվածքեղենի արտադրությունն ավելացել է 3 անգամ, մսեղենի և կոնսերվի արտադրությունը՝ 5 անգամ, բուսական յուղինը՝ 3 անգամ։

☆ Ռումինական Բանվորական պարտիայի երկրորդ համագումարը կարևոր միջոցառումներ է մշակել երկրի տնտեսության հետագա զարգացման համար։ Պարտիան և կառավարությունը խնդիր են դրել՝ է՛լ ավելի ուժեղացնել ծանր ինդուստրիայի և գյուղատնտեսության զարգացումը, առաջ մղել թեթև և սննդի արդյունաբերությունը, դրանք ի սպաս դնել ժողովրդի կենսամակարդակը բարելավելու համար։

☆ Երկրորդ հնգամյակում հատուկ զարգացում է ստանալու քիմիական արդյունաբերությունը, մասնավորապես բնական գազի արտադրությունը, ինչպես նաև մեքենաշինությունը, որը մեքենաներ է արտադրելու ինչպես թեթև արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության համար։

☆ Հնգամյակի տարիներին կկառուցվեն և շահագործման կհանձնվեն արդյունաբերական մի շարք նոր խոշոր ձեռնարկություններ, որոնց թվում խողովակաշլանման գործարան Ռոման քաղաքում, նեֆտի մշակման խոշոր գործարան Դանուբի դելտայում, քիմիական պարարտանյութեր արտադրող 4 գործարան, սինթետիկ կաուչուկի գործարան և այլն։



☆ Կառավարությունը շարունակելու է երկրի էլեկտրիֆիկացման 10-ամյա պլանի անշեղ իրագործումը։ Ընթացիկ տարվա 76 օրում կարտադրվի այնքան էլեկտրաէներգիա, ինչքան արտադրվել է ամբողջ 1938 թվականին։

☆ Ռումինիայի աշխատավորները լուրջ հաջողություններ են ձեռք բերել նաև գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։ Ժողովրդական իշխանության տարիներին հացահատիկային կուլտուրաների արտադրությունը գերազանցել է մինչպատերազմյան մակարդակը։ Խոշոր աշխատանքներ են կատարված գյուղատնտեսությունը մեքենայացման ենթարկելու ուղղությամբ։ Միայն վերջին 4 տարվա ընթացքում աշխատավոր գյուղացիությունը ստացել է մոտ 10 հազար տրակտոր, 6 հազար շարքացան, 5 հազար հնձող մեքենա, 5 հազար կալսիչ ու կոմբայն և ուրիշ շատ մեքենաներ ու գործիքներ։

☆ Հարյուր հազարավոր աշխատավոր գյուղացիական ընտանիքներ հետևելով պարտիայի կոչին, մտել են գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներն ու կոլեկտիվ տնտեսությունները, այսպիսով անցում կատարելով դեպի սոցիալիստական գյուղատնտեսությունը։

☆ Ռումինիայում կազմակերպված են մեծ քանա

կությամբ պետական տնտեսություններ, որոնք մոտակա տարիներին պետք է դառնան հացահատիկ արտադրող հիմնական օջախներ։ 1960 թվականին նրանք պետական ֆոնդը պետք է մուծեն ավելի քան 1 միլիոն տոննա հաց։

☆ Մինչև Ռումինիայի ազատագրումը, 12 հազար կալվածատերեր երկրում ունեին այնքան հող, որքան 2,5 միլիոն գյուղացիական տնտեսություններ։ Միայն թագավորը ուներ 300 հազար պոգոն հող (պոգոնը 0,5 հեկտար է), այն ժամանակ, երբ միլիոնավոր գյուղացիական տնտեսություններ կամ հող չունեին, կամ այնքան քիչ ունեին, որ նրանով չէին կարող կերակրվել։

☆ Ռումինիայում գրեթե խսպառ վերացվել է անգրագիտությունը։ 1955—1956 ուսումնական տարվանից մտցված է 7-ամյա պարտադիր ուսուցում քաղաքներում, բանվորական ավաններում, շրջանային կենտրոններում և գյուղերի մեծ մասում։

☆ Երկրում բացվել են տարբեր աստիճանի բազմաթիվ դպրոցներ, այդ թվում նաև բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Եթե 1938 թվականին Ռումինիայում կար 26 հազար ուսանող, ապա ներկայումս նրանց թիվը հասել է 60 հազարի։ Ուսանողների կեսից ավելին թոշակներ են ստանում։

☆ Ներկայումս Ռումինիայում գործում են 62 թատրոն, 18 ֆիլհարմոնիա, 4 օպերային թատրոն, 12 հազար կուլտուրայի տուն, 40 հազարից ավելի գրադա-



րան և մոտ 30 հազար գեղարվեստական ինքնագործունեության անսամբլներ։ Գնալով ընդարձակվում են կինոֆիկացիայի և ռադիոֆիկացիայի ցանցերը։ Միայն 1956 թվականին հրատարակված գրքերի տիրաժը անցնում է 35 միլիոն օրինակից։

☆ Ժողովրդական կառավարությունը լուրջ ուշադրություն է դարձնում ազգաբնակչության առողջապահության բարելավման հարցերին, 1938 թվականի համեմատությամբ, ներկայումս երկրում հիվանդանոցային մահճակալների թիվը ավելացել է 51 հազարով, բժիշկների թիվը՝ 14 հազարով։ Այժմ Ռումինիայի 800 բնակչին հասնում է մեկ բժիշկ։ Գյուղական բնակչությանը սպասարկելու համար ավելացվել է տեղական ամբուլատորիաների քանակը, բացվել են 1.465 ծննդատներ և 2.100 բժշկական կետեր։

☆ Անցյալ տարի սոցիալական ապահովագրության համար պետությունը բաց է թողել ավելի քան 2 միլիարդ լեյ, 1949 թվականի 658 միլիոն լեյի դիմաց։ Տարեցտարի ավելանում է պետության հաշվին սանատորիաների և հանգստյան տների համար աշխատավորներին և նրանց երեխաներին բաց թողնըվող ուղեգրերի քանակը։ 1956 թվականին բաց է թողնըված 450 հազար ուղեգիր, 1949 թվականի 195 հազարի դիմաց։

☆ 1957 թվականին պետական և կոոպերատիվ առևտրական ցանցի կողմից բնակչությանը 4 միլիոն լեյով ավելի արդյունաբերական ապրանքներ և սննդամթերքներ են վաճառված, քան 1956 թվականին։

———

# «ԲԱՐԳԱՎԱՃՄԱՆ» ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԱԿԱՆ ԲՈՂԻ ՀԵՏԵՎՈՒՄ

## Վ. ՌՈԴԻՈՆՈՎ

Ամերիկյան բուրժուական մամուլն անդադար աղմկում է կապիտալիստական աշխարհի գլխավոր երկրի բարգավաճման մասին։ Չնայած այն բանին, որ վերջին ամիսներին գնալով ավելի ակներև են դառնում ԱՄՆ-ի էկոնոմիկայի անբարենպաստ վիճակի նշանները, շատ թերթեր տքնաջանորեն աշխատում են ընթերցողին հավատացնել, թե ամեն ինչ լավ է ընթանում և թե ամերիկացիները պատճառ չունեն անհանգստանալու։

Բայց արդյո՞ք ամեն ինչ է, որ բարենպաստ է կապիտալիզմի այդ միջնաբերդում։ Դիմենք ԱՄՆ-ի արհմիութենական մամուլին, որի էջերում երբեմն թափանցում է ճշմարտությունը Ամերիկայի շարքային աշխատավորների կյանքի մասին։ «Լեյբորս Դեյլի» արհմիութենական թերթը դիմել էր «Խ. Լ. Գրին» առևտրական ընկերության բանվորու-



հի Մերի Դրյեկին, խնդրելով պատասխանել, թե նա ինչ կարծիքի է ամերիկյան էկոնոմիկայի բարգավաճման մասին։ Բանվորուհին շատ լակոնիկ ձևով պատասխանել էր. «Մենք դրա երեսը չենք տեսնում»։ Ըստ երևույթին, իրոնիայով նկատում է «Լեյբորս Դեյլին», այդ կինը թերթ չի կարդում և այդ պատճառով չգիտե, որ ինքը ապրում է «բարգավաճման մեծ դարաշրջանում»։ Թերթը պարզաբանում է, որ Դրեյկի ստացած աշխատավարձը երեք անգամ պակաս է ապրուստի համար պահանջվող նվազագույն գումարից։ Մերի Դրեյկի դրության մեջ են գտնվում ամերիկյան ավելի քան հինգ միլիոն աշխատավորներ, որոնք աշխատում են մանրածախ առևտրի ասպարեզում։

Է՛լ ավելի ցածր աշխատավարձ են ստանում ԱՄՆ-ի գյուղատնտեսական բանվորները։ Գյուղատնտեսական բանվորների արհմիության տվյալներով, Հարավի և Հարավ-Արևմուտքի ֆիրմաներում զբաղված 750 հազար մարդ ստանում են շատ ցածր աշխատավարձ՝ շաբաթական 8-ից մինչև 17 դոլլար։

«ԱՄՆ-ի ցածր վարձատրվող բանվորների վիճակը,— նշում է «Ֆեդերյշեն նյուս» թերթը,— իրոք որ ողբերգական է»։ Մի այլ արհ-

մխոսթենական թերթ՝ «ԱՖՏ—ԿԱՄ Նյուզը» գրել է. «Ցածր վարձատրվող բանվորները զուրկ են շատ կարևոր բաներից՝ նորմալ սննդից, տանելի բնակարանից և համապատասխան բժշկական օգնությունից»։ Այդպիսի ընտանիքների մեծամասնությունը զուրկ է ամսական մեկ լիտրից ավելի կաթ առնելու հնարավորությունից։

Նյու-Յորքի նահանգի օրենսդրական ժողովին ուղարկած իր հատուկ ուղերձում այդ նահանգի նահանգապետ Հարրիմանը ընդունել է, որ նահանգի բնակչության առնվազն մեկ քառորդը տառապում է աղքատությունից։ Ցածր եկամուտ ունեցող ընտանիքների դրության հետազոտության նախնական արդյունքները ցույց տվեցին, որ մոտ 800 հազար ընտանիքներ և 595 հազար առանձին անձինք 1955 թվականին ունեցել են այնպիսի եկամուտ, որը չի բավարարում ապրուստի մինչև իսկ նվազագույն ծախսերը ծածկելու համար։ «Ութնամյա բարգավաճումը,— հայտարարել է Հարրիմանը,— չուծեց ցածր եկամուտների պրոբլեմը»։

Նման հաղորդագրություններ են ստացվում նաև խրոնիկական գործազրկությամբ տառապող շրջաններից։ Վերջերս ԱՄՆ-ում լույս է տեսել «Աղքատ արդյունաբերական



շրջանները՝ ազգային պրոբլեմ են» բրոշյուրը։ Բրոշյուրում նշվում է, որ ամենածանր դրություն է ստեղծվել ԱՄՆ-ի ածխային շրջաններում։

Հարավային Իլլինոյսում, որտեղ արդյունահանվում է բիտումինոզային ածուխ, 1920 թվականից մինչև 1950 թվականը ածխահանքերում աշխատող բանվորների թիվը կրճատվել է՝ 85 հազարից հասնելով 28 հազարի, իսկ 1954 թվականին՝ 15 հազարի։ Ներկայումս Հարավային Իլլինոյսի առանձին քաղաքներում գործազուրկները կազմում են ամբողջ բանվորական ուժի 21 տոկոսը։ Նրման մասսայական գործազրկություն է նրկատվում նաև Պենսիլվանիայի ածխագործական ավաններում։

«Երբ բնակավայրում, որն ապրում է գլխավորապես լեռնահանքային աշխատանքներից ստացվող միջոցներով, փակվում են ածխահորերը,— կարդում ենք բրոշյուրում, —այն ժամանակ տեղի առևտրականները, որոնց առևտրի էական մասը կախված է ածխահատներից, կորցնում են իրենց եկամտի կարևոր աղբյուրը... Ճանապարհները, հասարակական շենքերը, դպրոցաշենքերը և հասարակական մյուս հիմնարկները լքման են դատապարտված... Թշվառության վկաներ

են՝ ամայացած հիմնարկները, բարձիթողի տները, չներկված դպրոցական շենքերը և անկման մյուս հատկանիշները»։

«Վաշինգտոն պոստ էնդ Թայմս հերալդ» թերթը վերջերս պատմում էր չքավորների մասին, որոնք միջոց չունեն իրենց երեխաներին կերակրելու համար։ «Քաղցը,— գրել է թերթը,— հետապնդում է երեխաներին Վաշինգտոն քաղաքի հարավ-արևմտյան շրջանում։ Դա ուրվական չէ. այն կարելի է տեսնել ամեն քայլափոխում... Սևացած ատամներ, հյուծված դեմքեր, ուռած փոր՝ այսպիսի տեսք ունեն այդ շրջանի երեխաները, որոնք մշտապես տառապում են քաղցից։ Նրանց մեծամասնությունը պատկանում է գործազուրկ կամ ցածր վարձատրվող աշխատավորների ընտանիքներին։

Թերթում բերվում է Վաշինգտոնի բնակչուհիներից մեկի նամակը, որը ի թիվս փոքրաթիվ այլ մարդկանց, իր միջոցներով օգնում է այդ սովահար երեխաներին։ Նամակում ասվում է. «Այն ժամանակ, երբ մթերքների ավելցուկներն ուղարկում են արտասահման, ավելի անհավատալի և անբարոյական է թվում այն, որ մայրաքաղաքում փոքրիկ երեխաները ստիպված են գիշերները դուրս գալ փողոց և փորփրել աղբարկղները մի ուտելիք գտնելու համար»։



Անցյալ տարվա վերջերին մանկական աշխատանքի հարցերի ազգային կոմիտեն հրատարակեց Բակնելի համալսարանի պրոֆեսոր Կարրակերի բրոշյուրը, որի մեջ պատմըվում է այն անլուր շահագործման մասին, որին ենթարկվում են ամերիկյան 600 հազար երեխաներ ԱՄՆ-ի գյուղատնտեսության մեջ։

Ամեն տարի հարյուր հազարավոր սեզոնային գյուղատնտեսական բանվորներ, աշխատանք փնտրելու համար, հարավային նահանգներից մեկնում են երկրի մյուս շրջանները։ Նրանք ստիպված են իրենց հետ վերցնելու երեխաներին, որոնք մեծահասակների հետ միասին ծանր դաշտային աշխատանք են կատարում։

Բրոշյուրի հեղինակի ասելով, անգամ հընգամյա երեխաները շաբաթական 6 օր աշխատում են հասակավորների հետ համահավասար, օրական 10—12 ժամ զբաղված լինելով լոբի կամ պոմիդոր հավաքելով։ Ընդորում այդ երեխաները զրկված են ոչ միայն հանգստից և խաղերից, այլև նույնիսկ բավարար սննդից։ Նրանք արթնանում են առավոտյան ժամը վեցին, պարկում են քնելու ուշ երեկոյան։

Եվ այսպես՝ օրեցօր, շաբաթեշաբաթ...

Փոքրիկ աշխատավորներին անծանոթ են նույնիսկ ամենահասարակ մանկական խաղալիքները։ «Եթե նրանք ժամանակ և ուժ ունենային,— նկատում է Կարրակերը,— ապա նրանց միակ խաղալիքները կլինեին փայտերը և բզեզները»։

ԱՄՆ-ում ծանր դրության մեջ են գտնվում զառամյալ մարդիկ, որոնք հաճախ զուրկ են գոյության որևէ միջոցից։ Ինչպես հաղորդել է Ասոշիեյտեդ պրես գործակալությունը, հաշմանդամ, 61 տարեկան Սենտինոն իրեն ցած է գցել Նյու-Յորքի տասնյոթ հարկանի շենքի կտուրից։ Հուսահատության մեջ ընկած այդ հաշմանդամը մահից առաջ ոստիկանին ասել է, որ ինքը փող չունի բնակարանի վարձը վճարելու համար։ «Ոչ ոք չի ուզում օգնել ինձ,— հայտարարել է Սենտինոն։

Դա ամենևին էլ եզակի դեպք չէ։ Զառամյալ տարիքի հասած մարդիկ իրենց ավելորդ են համարում ժամանակակից Ամերիկայում։ Նրանց մի մասը, չունենալով գոյության միջոցներ, Սենտինոյի նման վերջ է տալիս իր կյանքին։ Ոմանց էլ, խելագարի տեղ դնելով, տեղավորում են հոգեբուժական հիվանդանոցներում։

Միացյալ Նահանգներում տարածված է



այսպես կոչված «Զառամյալների տների» սիստեմը։ «Պարեյդ» ժուռնալը, իր ասելով, «սոսկալի տեղեկություններ է հավաքել այն մասին, թե ինչպես բոլոր զառամյալների նկատմամբ ոչ մարդկային վերաբերմունք է ցուցաբերվում» այդ հաստատություններում։ Ժուռնալում զետեղված հոդվածում նշվում է, որ «զառամյալների տների» մեծամասնությունը գտնվում է մասնավոր ձեռնարկատերերի ձեռքում, որոնք շահույթներ են կորզում այդ տներից։ Այդ տներից մի քանիսում,— գրել է ժուռնալը, «ծերունիներին կապում են մահճակալներին և նարկոտիկների օգնությամբ անընդհատ քնեցնում։ Այդ հաստատություններում ամեն տեսակի քնաբեր դեղերի անխտիր օգտագործման հետևանքով կենսաթոշակառուներին այնքան են թմրեցնում ու թուլացնում, որ նրանք գրեթե ոչինչ չեն ուտում և չեն պահանջում»։

Աշխատանքի պրոբլեմները հետազոտող ասոցիացիան նշել է, որ «Ծերունիների նկատմամբ հոգատարության բացակայությունը ԱՄՆ-ի կյանքի ամենաբացասական կողմերից մեկն է ատոմի և ավտոմատացման դարում»։

Ամերիկայի բուրժուական մամուլը պարծենկոտությամբ գրում է բանվորների աշ-

խատավարձի աճման մասին։ Իրոք, վիճակագրական տվյալները վկայում են, որ բանվորների անվանական միջին աշխատավարձը վերջին ժամանակներս որոշ չափով աճել է։ Սակայն փաստորեն աշխատավարձի այդ աճը ի չիք է դարձվել հարաճուն թանկության պատճառով։ ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրության տվյալներով, 1957 թվականին ամսեամիս ավելանում է ապրուստի միջոցների արժեքը։ Ապրուստի միջոցների արժեքի բարձրացման գլխավոր պատճառը պարենամթերքների մանրածախ գների և բնակվարձի բարձրացումն է։

ԱՄՆ-ի գյուղատնտեսության մինիստրությունը հրապարակել է հատուկ զեկուցում, որը ցույց է տալիս, որ 1956 թվականին ամերիկյան գյուղական բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող եկամուտը մոտավորապես մեկ տոկոսով պակասել է՝ նախորդ տարվա համեմատությամբ։

Ամերիկայի Միացյալ Նահանգների աշխատավորների համար ծանր բեռ են հանդիսանում բազմաթիվ հարկերը։ Աշխատանքի պրոբլեմները հետազոտող ասոցիացիան հրատարակել է «Հարկերի բեռը» բրոշյուրը, որի մեջ նշվում է, որ ցածր վաստակ ունե-



ցող ընտանիքների եկամուտների մեկ երրորդը ծախսվում է հարկերի վճարման համար։

Յունայթեդ պրես գործակալության թղթակիցը վերջերս հաղորդել է. «Ամերիկյան հարկատուները այս տարի ավելի շատ են թաղվելու պարտքերի մեջ, քան երբևէ, քանի որ ֆեդերալ, նահանգական և տեղական իշխանությունները ցանկանում են հարկերի հաշվին ավելի շատ ստանալ, քան եղել է ԱՄՆ-ի պատմության մեջ երբևէ»։

Նա ավելացնում է, որ ներկայումս ԱՄՆ-ում կան ձվի վրա դրվող 100 տեսակի հարկեր, տղամարդու կոստյումի վրա՝ 116, կանացի գլխարկի վրա՝ 150, բնակելի տների վրա՝ 600 տեսակի հարկեր։

Այս փաստերի լույսի տակ զարմանալի չէ, որ գնալով ավելի ու ավելի է աճում այն ամերիկացիների թիվը, որոնք հազիվհազ են կարողանում ծայրը ծայրին հասցնել։

Եվ, այնուամենայնիվ, ԱՄՆ-ում խոսում են «բարգավաճման» մասին։ Այո, իսկապես, բարգավաճում կա այնտեղ, բայց ո՞ւմ համար։ Պարբերական մամուլը հաղորդում է խոշոր կապիտալի առասպելական չափով աճող շահույթների մասին։ ԱՄՆ-ի խոշորագույն նավթային ընկերությունը՝ «Ստանդարտ օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսին» 1956

թվականին ստացավ նոր բարձր ռեկորդային շահույթներ. հարկերի վճարումից հետո այդ մոնոպոլիայի գանձարաններում մուտք եղավ 808,5 միլիոն դոլար՝ 14 տոկոսով ավելի, քան 1955 թվականին։ Բայց առաջին տեղը բռնեց ամերիկյան ամենամեծ մոնոպոլիան՝ «Ջեներալ մոտորսը», որի զուտ եկամուտը կազմեց 847,4 միլիոն դոլար։

Դա մեկն է այն մոնոպոլիաներից, որոնք զբաղված են սպառազինության արտադրությամբ։ Պատերազմի համար աշխատելը դարձել է ամերիկյան միլիարդատերերի ու միլիոնատերերի ամենաշահավետ գործը։ Ուստի զարմանալի չէ, որ ԱՄՆ-ի ֆինանսական նոր տարում, որը սկսվել է հուլիսի 1-ից, պետական բյուջեով միայն պատերազմական ուղղակի ծախսերի համար հատկացվել է ավելի քան 45 միլիարդ դոլար։ Այդ միջոցները հարկերի օգնությամբ դուրս են քաշվելու աշխատավորների գրպաններից, որպեսզի հետո, որպես շահույթ, գնան լցվեն մոնոպոլիաների գանձարանները։

Ամերիկայի Միացյալ Նահանգների կապիտալիստական կարգը երկրի բնակչության ճնշող մեծամասնության դաժան շահագործման հաշվին բարեկեցիկ վիճակ է ապահովում փոքրաթիվ մարդկանց համար։

---

## СОДЕРЖАНИЕ





Պատ. խմբագիր՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
**БЛОКНОТ АГИТАТОРА**
№ 15 1957 г.

ՎՖ 07839 Պատվեր 598 Տիրաժ 8.550

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։